

# ԷՋՄԻԱԾԻՆ

ԿՐՕՆԱ–ԲԱՐՈՅԱԿԱՆ ԱՄՍԱԹԵՐԹ

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ, ԹԻՒ 5 | ՑՐԷԶՆՕ, ՔԱԼ. ՄԱՅԻՍ, 1918 | ԳԻՆ ՏԱՐ. ՄԷԿ Թ

## ՅԱՐՈՒԹԻՒՆ



Քսան դարերէ ի վեր քաղցր ու քաղցրագոյն Նազովրեցի Յիսուսին Ծննդեան տօնը, որ ամէն տարի ձմեռուան մէջ կը տօնեն Քրիստոնեայ անունը իրենց վրայ կրող բոլոր ազգերը, առաջին անգամ հրեշտակներէն ծանուցուեցաւ աշխարհի, մէկ քանի աղէտ ու աղքատիկ հովիւներու, որոնք դաշտի մը մէջ իրենց ոչխարները կ'արածէին: «Փառք ի Բարձունս Աստուծոյ» են. ծանօթ երգով աւետեցին հրեշտակները հովիւներուն ապագայ մեծ դէպքերու սկզբնաւորութիւնը եղող՝ աննշան կարծուած այդ դէպքը: Յարութեան տօնը որ գարնան զարթօնքին հետ կը տօնեն դարձեալ բոլոր Քրիստոնեաները, նոյն հրեշտակներն էին որ այս անգամ ալ աւետեցին քանի մը տկար կիներու, որոնց հաւատքը շատ աւելի զօրաւոր էր անոր աշակերտներու հաւատքէն, որոնցմէ մէկը ուրացաւ զնա, ուրիշ մը մատնեց և միւսներն ալ վտանգը տեսնելնուն պէս չուառ հեռացան Անոր քովէն: Մինչդեռ այդ տկար կարծուած կիները հետևեցան Անոր մինչև Գողգոթա և գերեզման, անկեղծ սէրը և կենդանի հաւատքը որ ունէին Անոր վրայ՝ ամէն վախ և նկատում մէկդի նետել տուին:

Հետևաբար իրե՛նք արժանի եղան այս անգամ ալ այդ մեծ դէպքին աւետիսը հրեշտակներէն լսելու «Փառք ի բարձունս»ի նման երգով մը. «Զի՞ խնդրէք զկենդանին ընդ մեռեալս, չէ աստ, այլ յարեաւ . . .»:

Ծննդեան տօնը փոքրիկները կը հրճուեցնէ ու կը խանդավառէ, մինչդեռ Յարութեան տօնը չափահասները կը զօրացնէ իրենց ցաւոց ու նեղութեանց մէջ, և գերեզմանին եզերքը հասած ծերունիները կը յուսադրէ անմահութեան և վերջին յարութեան վսեմ գաղափարականներով:

Ի՞նչ է սակայն Յարութեան վարդապետութեան աշխարհին տուած պատգամը: Աստուածաբանութի՞ւն մը կամ կրօնական դաւանա՞նք մը արդեօք. ո՛չ, և ոչ ալ դարերու ընթացքին մէջ հնարուած յերիւրանք մը: Քրիստոսի ծնունդը, անոր կեանքն ու քարոզութիւնը, խաչելութիւնը, թաղումն ու յարութիւնը, ինչպէս որ Աւետարանին մէջ պատմուած են, իրողութիւններ են, այնքան ստոյգ ու անվիճելի, ինչպէս այսօր աշխարհիս մէջ տեղի ունեցող դէպքերը: Եւ որքան խաչելութիւնը իր պարտքն էր, այնքան ալ յարութեան փառաւոր յաղթանակը իր իրաւունքն էր: ՔՐԻՍՏՈՍ ՅԱՐԵԱՒ: Եւ այս հաւատքը անքակտելի հիմն է քրիստոնէական եկեղեցւոյ, որ ոչ միայն չէ խախտած դարերու հալածանքներէն, այլ և բոլոր հալածիչները պիտի ժողվէ իր յաղթանակի դրօշակին տակ, որուն ներքև «Չիք խտիր ոչ Հրէի, ոչ հեթանոսի, ոչ ծառայի և ոչ ազատի, ոչ արուի և ոչ իգի»: Յարութեան փառաւոր իրողութիւնը երկար դարերէ ի վեր մարդկութեան միտքը չարչարող մթութիւնը լուսաւորեց, թէ գերեզմանին վրայ դրուած կափարիչով մարդկային

կեանքը չ՚անէանար, այլ անկէց անդին կը բացուի նոր աշխարհ մը, ուր կեանքը ոչ վախճան ունի եւ ոչ ձանձրոյթ. ուր «ոչ արք կանայս առնեն եւ ոչ կանայք արանց լինեն, այլ են իբրեւ զհրեշտակս»: Կեանք մը՝ «զոր ակն ոչ ետես եւ ունկն ոչ լուաւ, եւ ի սիրտ մարդոյ ոչ անկաւ»: Այս հաւատալիքներուն վրայ հաստատուած է Քրիստոնէական Եկեղեցին: Հոգւոյ անմահութեան եւ հանդերձեալ կեանքի հարցերով չարչարուող մարդկային միտքը թող դիմէ պատմութեան, թող դիմէ բնութեան եւ թող դիմէ գիտութեան: Պատմութիւնը պատասխան կուտայ, թէ որ եւ է ժամանակի մէջ չէ եղած ցեղ մը որ ապրած չըլլայ անմահութեան գաղափարով: Չի կորնչելու, անմահանալու իղձը բնական պահանջն է մարդուն, որ կը բղխի հոգիէն: Հետեւաբար այդ պահանջին գոհացում տըւող իրականութիւնը, անմահութիւնը, պէտք է գոյութիւն ունենայ: Տրամաբանական է ան:

Բնութիւնը ցոյց կուտայ մեզի հողին մէջ փտող սերմը որ կ՚ծլի, կը վերածնի. գարնան զարթնումին հետ այնքան գեղեցիկ կերպով կանաչութիւն հագած ծառերը, որոնք ձմեռուան մէջ սեւ սեւ ճիւղերով օդին մէջ ցցուած էին կուշտօրէն: Որդը, որ կը մեռնի իր պատեան խոզակին մէջ եւ վերստին դուրս կուգայ անկէց աղուամազ փետուրներով գեղեցկացած, ՄԱՐԴԸ, բոլոր արարածոց թագն ու պսակը, ինչո՞ւ բացառութիւն կազմէ բնութեան այս ընդհանուր օրէնքէն:

Գիտութիւնը կը բացատրէ եւ կը հաստատէ, թէ ինչ որ ստեղծուած է չի ոչնչանար: Ուր որ բան մը կը կարծես թէ կորսուեցաւ, իրականութեան մէջ ձեւափոխութիւն մը միայն տեղի ունեցած է: Ջուրը եռալով, նիւթ մը այրուելով կ՚անյայտանան, բայց չեն կորսուիր, չեն անէանար, այլ ուրիշ իրերու կը վերածուին:

Տրուած խնդրոյն ամենէն փառաւոր պատասխանը Զատկի պատգամը կուտայ մեզի «ՔՐԻՍՏՈՍ ՅԱՐԵԱՒ»ը: Պիտի ապրինք մենք ալ գերեզմանէն անդին, հոն ալ պիտի սիրենք ու աղօթենք, օր մը յարութեամբ դարձեալ մեր մարմնին հետ — ոչ թէ հիմակուանին պէս ապականացու եւ կարգ մը պէտքերու կարօտ — այլ փառաւորեալ մարմնին հետ միանալու իր յոյսով:

Ծնունդն աւետող «Փառք ի Բարձունըս»ը օրօրոցի շուրջն էր. Զատիկին «Քրիստոս յարեաւ»ը դատարկուած գերեզմանի մը շուրջն է. մին գոյութիւն տուած՝ շարունակութիւնը անծանօթ կեանքի մը սկզբնաւորութիւնը, որ պէտք է աճի կըրթուելով եւ դաստիարակուելով, եւ որ չի կրնար ըլլալ առանց տառապանքի բովերէն անցնելու. միւսը փրկուած ու հաստացած կեանքի մը վախճանական յայտնութիւնն է, որուն եզերքը թափուած արտասուքները աւելորդ եւ աղաղակները անտեղի են, եւ արդիւնք մարդկային տկար կազմըւածքի:

Ներկայ մարդկութիւնը խաչի եւ գերեզմանի զարհուրելի շրջան մը կ՚անցնէ, որ կերեւի թէ քիչ մը երկարատեւ պիտի ըլլայ, կրնայ ըլլալ որ ա՛լ աւելի մեծնայ ան: Սակայն գիշերը որքան ալ երկայն ու թանձր խաւարով պատած ըլլայ, վերջապէս տեղի կուտայ խաղաղ արշալոյսին: Կանցնին այս պատերազմները, կը դադրին զընուց շառաչիւնները, կը լռեն փոթորիկները. ինչպէս որ ցարդ որ եւ է աշխարհակալելու ձգտում ունեցող ամբարտաւանի չի տրուեցաւ այս աշխարհը, այժմ ալ նոյն նպատակաւ ներկայ արհաւիրքներուն պատճառ եղող արիւնկզակ թագակիրներուն չի պիտի տրուի ան: Այս պատերազմներէն վերջ կը հաստատուին նոր օրէնքներ, կարգեր ու կանոններ. նոր գաղափարներ՝ չափուած ու ձեւուած Քրիստոնէական բըկզբունքներու վրայ: Խաչի եւ գերեզմանի այս ահաւոր շրջանին կը յաջորդէ Յարութեան կեանք մը սիրոյ, կեանք մը խաղաղութեան, արդարութեան եւ հաւասարութեան

Մեր դժբաղդ ազգը, որ ի հնումն մեծ ազգերու թագուհիները տեսած է, որ արդարութեան համար միշտ տառապեր է, որ հիմայ մանաւանդ կը մարթաուի, կը հեծեծէ արեան ճապաղիքներու մէջ. բըռնաւորութիւն, քաղց, հուր, սուր, ահագին գերեզմանի մը մէջ ձգած են զինքը, չի մնար այդ գերեզմանին մէջ ընդ երկար, յարութիւն կ՚առնէ: Միայն թէ մեր փըրկութեան գաղտնիքը գիտնայինք մեր մէջը փնտռել, դուրս գալով ատելութեան գերեզմանէն եւ յարութիւն առնել սիրով, որը

կրնայ յաւերժացնել մեր գոյութիւնը ազգաց շարքերուն մէջ:

Թո՛ղ ուրեմն, յարուցեալ Քրիստոսը օրհնէ իրեն չափ տառապած այս դժբաղդ ազգը, օրհնէ մեր վշտակիր Հայրապետը, Տ. Տ. Գէորգ Ե. Կաթողիկոսը և ազգին համար աշխատող բոլոր անձնուէր մշակները: Օրհնէ նաև զմեզ որ գիտնանք կատարել մեր պարտականութիւնները անոնց հանդէպ:



## ՔՐԻՍՏՈՍԻ ԿԵՆԱՑ ՎԵՐՋԻՆ ՕՐԵՐԸ

### Աւագ Շաբաթ



Զատկի տօնին նախընթաց կիրակի օրը Եկեղեցին յիշատակեց Քրիստոսի հանդիսաւոր վերջին մուտքն Երուսաղէմ: Նոյն օրը երբ երեկոյ եղաւ, պահ մը առաջ անոր շուրջը խռնուող, և «Ովսաննա» (Եբրայեցերէն է, կը նշանակէ ՓՐԿԷ, բայց կեցցէ՛ ապրի նշանակութեամբ գործածուած ըլլալու իմաստ ունի) աղաղակներով, և ի նշան մեծ յարգանաց իրենց վերարկուները Անոր անցնելիք ճանապարհին վրայ տարածող ժողովուրդէն ոչ մէկը համարձակեցաւ հրաւիրել զնա իր տունը, և Յիսուս հանդիսաւոր մուտքին հակառակ լռութեան մէջ հեռացաւ քաղաքէն ու իր աշակերտներուն հետ առանձնացաւ Գեթսեմանի ձորին մէջ, ձիթենիի մը ներքև, ուր բոլոր գիշերը անցուց աղօթքով:

Աւագ Երկուշաբթի.—Այսօր Յիսուս դարձեալ գնաց Երուսաղէմ և քարոզեց տաճարին մէջ խռնուած բազմութեան մը: Փարիսեցիական դասը այլ ևս չի կրնալով համբերել Քրիստոսի իրենց ուղղած խիստ յանդիմանութիւններուն և ժողովուրդին կողմանէ Անոր նկատմամբ արտայայտուած անկեղծ համակրանքին, սկսած էին զայն սպաննելու միջոց մը խորհիլ՝ ու իբր քաղաքական խռովարար հռոմէական կառավարութեան առջև ամբաստանելու դաւաճան միջոց մը կը փնտռէին: Կարդա՛ Մատթ. ԻԲ 15: Եւ մտքդ պահէ «Երթայք տուք զկայսերն կայսեր և զԱստուծոյն Աստուծոյ» պատասխան պատուէրը, և անպայման կերպով կատարէ այդ ոսկեղէն պատուէրը ճիշտ հիմա խաչին վրայ տառապող բոլորովին անպաշտպան քու Հայրենիքիդ ու ազգիդ հանդէպ:

Աւագ Երեքշաբթի.—«Յիշատակ տասն կուսանաց», երեկոյեան ժամերգութեան կը կարդացուի Աւետարանի այն մասը յորում Քրիստոս կը խօսի հարսանիք գնացող տասն կոյսերու առակը: (Մատթ. ԻԵ. 1-13: Նպատակն է սորվեցնել մեզի ըլլալ միշտ բարի, և ճրագին լոյսը, Քրիստոնէութիւնը, միշտ վառ պահել մեր սրտերուն մէջ, շարունակ իւղ դնելով հոն, ողորմութիւն տալով, օգնելով, ծառայելով և ի լրումն ամենայնի աղօթելով միշտ, ու այդ կերպով աշխատիլ Քրիստոսի հաստատած սիրոյ Թագաւորութեան ծաւալման տեսլեքական Սուրբ գործին:

—Աւագ Չորեքշաբթի.— Մատնիչ Յուդան իր տիրոջ թշնամիներուն հետ կը համաձայնի, և կը խոստանայ մատնել զնա անոնց, և այդ վատ արարքին գինը կը սակարկէ անոնց հետ երեսուն արծաթի, որ տասնեհինգ տոլարի չափ գումար մըն է: Այնու հետև յարմար առիթի կըսպասէ ու միևնոյն ատեն ինք ալ կը մատնուի խորին մտատանջութեան: Թշնամիները հետամուտ կըլլան քայլ մը առաջ գործադրելու իրենց սև խորհուրդը: Ժողովուրդը տաճարին մէջ ի զուր կ'ըսպասէ Յիսուսին, լսելու անոր քաղցր խօսքերը, մինչ Նա ամենախիստ առանձնութեան և լռութեան մէջ կ'աղօթէր մինչև հինգշաբթի առաւօտ:

Աւագ Հինգշաբթի.— Այսօր Քրիստոս իր աշակերտներուն հետ գնաց քաղաքին մօտաւոր մէկ թաղը ծանօթի մը տուն, որուն վերնատան ընդարձակ ու զարդարուած մեծ սրահին մէջ Զատկական մեծ ընթրիքը կերաւ անոնց հետ: Այդ պահուն էր որ Հրէից մէջ գոյութիւն ունեցող՝ հեռուէ եկող հիւրերու ոտները լուալու սովորութիւնը Քրիստոս ինք կատարելով, ծառայեցուց իր մաքուր նպատակին: Հասարակ ծառայի մը երևոյթն առնելով՝ իր ձեռքերով լուաց աշակերտներուն ոտները: Յուդան ալ մէջերնին էր: Ու երբ վերջացուց, ըսաւ անոնց. «Ես ձեր Տէրն ու Աստուածը ըլլալով՝ այս ծառայութիւնը ըրի ձեզի. դուք ալ իրարու այնպէս ըրէք», այսինքն այս աստիճան խոնարհ եղէք: Եւ յետոյ սեղանին վրայէն հաց ու գինի տալով անոնց բոլորին ալ, հաստատեց Սուրբ Հաղորդութեան կամ Սուրբ Պատարագի խորհուրդը, պատուիրելով որ շատ անգամ ընեն այդպէս: Ու ահիկա այն օրէն ի վեր ընդունուեցաւ Քրիստոնէութեան կարևոր պայմաններէն մին:

Աւագ Եշ. Գիշեր.— Երբոր դուրս ելան արդէն գիշեր էր, և Յիսուս ուղղուեցաւ իր աղօթքին

վայրը, Գեթսեմանի։ Հոն մինչդեռ մօտալուտ խաչին չարչարանքը և դառն մահուան երևոյթը իրական սարսափներով կը պատկերանային իր առջև, գիշերային խաւարը փարատող լուսինին ներքև, ծնկան վրայ եկած, բազուկները օդին մէջ պարզած, այնպիսի հզօր հաւատքով մը սրտին տագնապները իր Հօրը կը ներկայացնէր, որ երկիրը կը սարսէր ու երկինքը կը դողար. «Հա՛յր, եթէ հնար է, անցցի՛ զբաժակս զայս յինէն, բայց ոչ իմ կամք այլ քոյդ լիցի»։ Մատ. ԻԶ. 39։

Եթէ կարելի է փրկագործութեան այս վերջին պայմանը, կեանքիս զոհաբերութիւնը, խնայէ ինծի. բայց ոչ թէ իմ, այլ քու կամքդ թող ըլլայ։ Վերահաս վտանգը այնքան զօրեղ կ'ազդէ իր վրայ որ արեան քրտինքի մէջ կը մնայ իր մարմինը ու երկնառաք հրեշտակի մը այցելութեամբը կը քաջալերուի ու կը զօրանայ։ Աստուծոյ կամքն այն էր որ ինք զոհուի։ Եւ Յիսուս կը համակերպի սիրով։

Ահա Փրկիչը ձերբակալելու պաշտօնը ունեցող խումբը, որ կը բաղկանար քահանայապետական սպասաւորներէ և հռովմայեցի զինուորներէ, Յուդայի առաջնորդութեամբ յարձակեցան և, մատնիչին կողմանէ տրուած համբոյրին նշանով, բռնեցին զՅիսուս և ձեռքերը կապած տարին քաղաք։

Աւագ Ուրբաթ.— Կէս գիշերն անցած էր արդէն, երբ, մինչև հետևեալ օրը կէսօրէն առաջ, տեղական հաշուով ժամը երեք, Յիսուս դատարանէ դատարան, վրան յանցանք մը հաստատելու զուր ջանքերով, քաշկռտել յետոյ, վերջապէս կեղծաւոր Պիղատոսէն յաջողեցան առնել անոր մահուան վճիռը խաչով։ Աշակերտներէն մին արդէն իր դաւաճան հեռացած էր. ամենէն յանձնապաստանը տկարանալով ուրացած էր, միւսներն ալ ու ահի թողած փախած էին, որով Յիսուս մնաց իր թշնամիներէն լլկիչ ամբոխի մը ձեռքը։ Անոնք թքին անոր երեսին, ապտակեցին, ծաղրեցին, հայհոյեցին ու վերջապէս զինուորներու առաջնորդութեամբ տարին Գողգոթա ըսուած տեղը, ուր ի նշան ծայրայեղ նախատանաց, երկու յայտնի աւազակներու մէջտեղ խաչեցին։

Արեմաթացին Յովսէփ, Յիսուսի գաղտնի հետեւողներէն մին, որ «չէր միաբանեալ ընդ խորհուրդս և ընդ գործս նոցա», և որ ինքն իսկ «ակն ունէր արքայութեանն Աստուծոյ», իրիկուան դէմ երբ տեսաւ որ Յիսուս մեռած է, Պիղատոսէն արտօնութիւն առնելով արժանաւոր պատիւներով թաղեց Անոր մարմինը իր սեփական գերեզմանին մէջ, որ կնքուեցաւ և զինուորական պահպանութեան յանձնուեցաւ։

Աւագ Շաբաթ.— Երբայական Սինէտրիոնէն հրամայուած կարգադրութեամբ, Յիսուսի մարմինը այդ կերպով կը մնար գերեզմանին մէջ։ Հակառակորդներ իրենց ոճրագործ բաղձանքին լրումը տեսած կարծելով, քաշուած են հրապարակէն։ Յուդա յուսահատութենէն ինքզինքը կախելով անձնասպան եղած է, միւս աշակերտները մէջ տեղ չիկան դեռ։ Քանի մը տկար կիներ միայն, որոնց սրտերուն մէջ խորհրդաւոր ըլլալու աստիճան քաղցր յիշատակ մը թողուցած էր Յիսուս, իրիկուան դէմ կ'այցելեն անոր գերեզմանը և հետևեալ օրը գալ ու խունկերով և անուշահոտ իւղերով օծելու խորհուրդով կը վերադառնան տեղերնին։

Միաշաբաթի առաւօտ.— Իւղաբեր կանայք Մագդաղենացին Մարիամ, Մարիամ Կղէովպեան, Սալոմէ Զեբեդեան և Յովհաննա, առաքեալներէն աւելի խոհեմ և անվեհեր, «վաղ քաջ ընդ առաւօտն» թանկագին պատրաստութիւններով կը դիմեն դէպի գերեզման, ըստ իրենց կանխորոշ փափաքանաց՝ խնկել և օծանելու համար սուրբ մարմինը իրենց յոյժ սիրեցեալ Փրկչին։ Կը տեսնան որ ոչ ոք կայ հոն. ճանապարհին ունեցած իրենց մտահոգութեան առարկան, ծանր կափարիչն ալ, մէկդի գլորուած է գերեզմանին վրայէն։ Զարմանքնին ապշութեան փոխուելու վրայ էր, երբ գեղատեսիլ հրեշտակ մը կափարիչին վրայ կեցած քաղցր ձայնով մը կը գրաւէ զիրենք ըսելով. «Գիտեմ որ խաչուած Յիսուսը կը փնտռէք. բայց Նա հոս չէ. ՅԱՐԵԱ՛Ւ։



## ԿԱՐՄԻՐ ՀԱՒԿԻԹ

Զատկի առթիւ կարմիր հաւկիթ գործածելու սովորութիւնը անյիշատակ ժամանակներէ եկած ըլլալու է։ Կը կարծուի թէ հեթանոսութենէ անցած է Քրիստոնէութեան մէջ, ինչպէս մեր Տեառնընդառաջին լուսավառութիւնը, Վարդավառի տօնին իրարու վրայ ջուր սրսկելու սովորութիւնը և այլն։ Ոմանք ալ կը կարծեն թէ Քրիստոնէութիւնը իրրև յարութեան խորհրդանշան ընդունած է հաւկիթը, թերևս նկատելով անոր գեղեցիկ շինուածքը և ներքին զարմանալի կազմն ու ծփացող մաքրութիւնը։

## ԶԱՏԿԻ ՏՕՆԻՆ ՔՐԻՍՏՈՆԵԱՅՑ ՄԷՋ ԵՂԱԾ ԺԱՄԱՆԱԿԻ ՏԱՐԲԵՐՈՒԹԻՒՆԸ

Քրիստոնէական Զատիկը կամ Քրիստոսի Յարութեան տօնը կապուած է Հրէական Զատկի կամ Պասեքի տօնին հետ, որ կը նշանակէ Բաժանում, զատուիլ, անցք: Երբ Հրէայք Մովսէսադիր օրինաց համաձայն Պասեքի ութօրեայ տօնը կը կատարէին, ամեն տուն գառնուկ մը մորթելով, անխմոր հաց պատրաստելով և ուրիշ կարգ մը աւանդական երկարապատում արարողութիւններ կատարելով, ինչ որ ըրած էին այն գիշերը երբ Աստուածային ազդեցութեամբ ու Մովսէսի հրամանով գաղթի պիտի հեռանային Եգիպտոսէն, ճիշտ այդ մեծ տօնի օրերուն պատահեցաւ Քրիստոսի խաչելութիւնը, թաղումը և յարութիւնը: Նոր Իսրայէլացիք, Քրիստոնեայք, Աստուծոյ գառին՝ Քրիստոսի խաչի մահուամբ զոհուելով հանուր մարդկութեան ստրկութենէ ազատութեան տօնը կը տօնեն այժմ հին Պասեքին տեղ· բայց ցաւալի է որ բոլոր Քրիստոնեայ ցեղեր միատեղ չեն տօներ այդ հրաշալի տօնը:

Առաջին դարու Քրիստոնեաները Հրէից հետ Պասեք կ'տօնէին Նիսան 14ին և առ օրերուն յաջորդող Կիրակին ալ Յարութեան յիշատակը կը տօնէին: Բայց որովհետև այդ ամիսը Հրէական տօմարին մէջ փոփոխական էր միշտ, ուստի եկեղեցւոյ հեղինակաւոր հայրերը խորհեցան միջին ճամբայ մը գտնել, ու մանրազննին հաշիւներով հաստատելով որ Քրիստոսի Յարութիւնը գարնան գիշերահաւասարին յաջորդող լուսնի լրման կը զուգադիպէր Նիսան 14ը, ուստի Նիկիոյ Հայրապետական սրբագումար ժողովը 325ին վերջնական կերպով որոշեց Նիսան 14ին յաջորդող Կիրակին տօնել Զատիկը: Այս հիման վրայ Հայ և Օրթոտոքս եկեղեցիներուն մէջ Զատիկը կը պատահի հին տօմարի հաշուով Մարտ 2·էն Ապրիլ 25· այս թուականէն ոչ առաջ և ոչ յետոյ: Լատինք և Ամերիկացիք միենոյն սկզբունքով կը տօնեն Զատիկը, և տարբերութիւնը հին ու նոր տօմարի խնդիր մ'է միայն: Այս տարի մենք Զատիկը կը տօնենք հին տօմարով Ապրիլ 22ին:



## «ԾԱՐԱՒԻ ԵՄ»

* * *

Երկու հազար տարի առաջ խաչին վրայէն, Աստուածորդւոյն բերանէն լսուած այս ձայնը, այս անգամ ալ Հայոց Աշխարհէն, մեր դժբաղդ Կաթողիկոսէն կուգայ մինչև այս հեռաւոր վայրերը, պանդուխտ՝ բայց անհունապէս բախտաւոր իր զաւակներուն· «Օգնութեան հասէ՛ք:»

Առաջնորդական Տեղապահ Գեր. Տ. Ծահէ Ծ. Վարդապետէն ստացուած շրջաբերականէ մը քաղուած հետևեալ տողերը «Էջմիածին»ի ընթերցողաց խորին ուշադրութեան կը յանձնենք, որ Նորին Ս. Օծութեան Ամենայն Հայոց սրբազան Կաթողիկոսէն հաղորդուած է:

. . . Սովը իր ահռելի բերանը բացած կեցած է դիմացնիս Հայութեան փրկուած բեկորները կլանելու: Եթէ կարող էք՝ անմիջապէս դրամական օգնութիւն հասցրէք թէ՛ այդ տեղից, թէ՛ Լոնդոնից և թէ այլ տեղերից: Հացի գինը ահռելի չափերի է հասած. ոսկի գինը աննկարագրելի չափի իջած:»

«Եգիպտական Օգնութեան գանձարանի մէջ այլ ևս ստակ չկայ: Օգնութեան հասէք և ձայն բարձրացրէք . . . .»

«. . . . Դրութիւնը սոսկալի է. պարզապէս մութ դաժան ու յուսահատ բառ ամենայնի: Մեր մնաց աչքերի առաջ Հայութեան մահուան խաչարձանն է կանգնած: Մնացածը դուք ինքնին կը կռահէք:»

Ապառաժներն անգամ ի զուր շարժելու ոյժ ունեցող այս աղաղակին հանդէպ, մանաւանդ երբ անիկայ մեր սիրելի Կաթողիկոսէն կուգայ, կը սիրենք յուսալ որ պիտի ցնցուի, պիտի յուզուի ամեն Հայ և յօժարութեամբ պիտի փութայ կատարել իր ազգասիրական պարտքը: Երանի՜ թէ վերջ տրուէր պարբերական հանգանակութեանց ու ամսական կամաւոր տուրքի դրութիւնը ընդունուէր. որուն եթէ ամեն մէկ Հայ անհատ որ կը գործէ, մասնակցէր, միլիոններ կը հայթայթէին շատ դիւրութեամբ:

Քրիստոսի խաչին վրայէն լսուած Ծարաւի եմ աղաղակն է որ կը լսուի հիմայ Կաթողիկոսի աղերսին մէջէն: Կա՞յ Հայ մը որուն սրտին չպիտի դպչի այդ ձայնը:

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎ

*Ապրիլ 21ին, կէսօրէ վերջ, Եկեղեցին ունեցաւ բացառիկ ընդհանուր ժողով մը։ Առենական գործողութիւնները կատարուելէ զկնի, օրակարգի խնդիրներուն անցնելով, Վէնթուրա փողոցի վրայ գտնուած, եկեղեցւոյ կից, տան տեղը գնելու եւ Էֆ փողոցի վրայի հին եկեղեցւոյ տեղը ծախելու խնդիրը սկզբունքով ընդունելով՝ գործադրութիւնը յանձնուեցաւ Հոգաբարձութեան։*

*Եկեղեցւոյ պատուհանի պատկերազարդ ապակիներուն վրայ, փոխան նուիրատուութեան, յիշատակարան գրելու խնդիր մըն ալ, որ բերուած էր ժողովին, բաւական երկար վիճաբանութեան նիւթ եղաւ։ Բայց նա, որ առաջին յիշատակարանը գրած էր, զովելի ընթացքով մը յանձն առաւ վերցնել զայն, ու խնդիրը ինքնին փակուելով խաղաղութիւնը չի խանգարուեցաւ։*

*Ժողովը գոհունակութեամբ տեղեկացաւ թէ Քալիֆօրնիան առանձին առաջնորդութեան վերածելու խնդիրը Երեսփոխանական Ժողովէն ընդունուած եւ ըստ այնմ տեղեկագրուած է Վեհ. Կաթողիկոսին։*

## «ԱՆԱՌԱԿ ՈՐԴԻ»ԻՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄԸ

*Մայիս 29ին, Երկուշաբթի երեկոյ, Կիրակնօրեայ Դպրոցի աշակերտք պիտի ներկայացնեն «Անառակ Որդի»ին թատերախաղը, Փարլըր Լէքհըր Բլըգի սրահին մէջ, ժամը 7·30ին։ Մտից տոմսին գինն է 25 սէնթ։*

## ԳՐԱԴԱՐԱՆԻ ՄԻՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԶԻՆՈՒՈՐՆԵՐ

*Եկեղեցւոյս Գրադարանի Միութիւնը, ի պատիւ իր ընկեր զինուորներուն, երեկոյթ մը տուաւ, անցեալ ամիս, եկեղեցւոյ ներքնայարկը։ Քաջալերական ուղերձներ խօսուեցան, եւ ներկայից խմբանկար պատկերը առնուեցաւ։ Զինուորները, որոնցմէ մի քանին մեկնած են արդէն, հետեւեալներն էին. Ա. Մուշեղեան, Ե. Յակոբեան, Յ. Կոստանեան, Յ. Տ. Յակոբեան, Կ. Աւագեան, Սուրէն Յովհաննէսեան, Արամ Աւագեան, Գ. Տօնապետեան, Տր. Գ. Ալուճեան, Արմենակ Ճգնաւորեան, Յուսիկ Տայիթեան, Դաւիթ Սագիկեան, Մարկոս Գույումճեան, Հմայեակ Յովհաննէսեան, Հմայեակ Շարաֆեան եւ Պօղոս Ասաքելեան։*

## ՊԱՏՈՒԱԿԱՆ ՀԱՅ ԶԻՆՈՒՈՐԻ ՄԸ

Գնահատելի մէկ Արարք

*Պ. Յարութիւն Շահգալդեան է անիկա, Եդեմէն, որ Անգլիա տարուած է այժմ։ Շահգալդեան Ֆրէզնոյի եւ Եդեմի եկեղեցիներուն մէյմէկ խորհրդաւոր ու գեղեցիկ ձեռագործներ նուէր ղրկելէ զատ, քանհինգ տոլար ալ դրամ ղրկած է հայ կարօտեալներուն ի նպաստ։*

## ԵԿԵՂԵՑՒՈՅ ԵՐԱԺԻՇՏ ՈՒՍՈՒՑԻՉԸ

*Հաճոյքով կ'արձանագրենք որ Եկեղեցին ունեցաւ մասնագէտ ուսուցիչ մը երաժշտութեան, յանձին Պ. Գրիգոր Փրոֆֆ-Գալֆաեանի, Հոգաբարձութեան յատուկ կարգադրութեամբ, որ եկած օրէն պաշտօնին ձեռնարկած ըլլալով՝ կը վարժեցնէ երկսեռ աշակերտներու մեծ խումբ մը եւ որ կ'պատրաստուի Զատկի պատարագին ինչ ինչ մասերը երգելու։ Պ. Գալֆաեան բնիկ Պրուսացի է, զաւակը Պրուսայի արդի հոյակապ եկեղեցին կառուցանող ճարտարապետ Օհաննէս Փրոֆֆ Գալֆայի, եւ իր ուսումը առած է Փարիզի մէջ։*

## ՔԱԼԻՖՕՐՆԻՈՅ ՀԱՅՈՑ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԻՒՆԸ

*Պ. Վ. Քիւրքճեան, Ֆրէզնոյի ներկայացուցիչը Ուսթըրի Երեսփոխանական Ժողովին մէջ, կը տեղեկացնէ թէ Ապրիլ 7ին գումարուած Երեսփոխանական Ժողովը սկզբունքով իր հաւանութիւնը տուած է Քալիֆօրնիոյ մէջ առանձին առաջնորդութիւն մը հաստատելու խնդրոյն, եւ որոշած է տեղեկացնել Ամենայն Հայոց Վեհ. Կաթողիկոսին։*

## ՀԱՅ ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ

*Ս. Երրորդութիւն Եկեղեցւոյ Հայերէն դպրոցը, իր օգտաշատ նպատակին ի նպաստ, սիրուն հանդէս մը ունեցաւ վարձուած սրահի մը մէջ, ուր ներկայ էր խուռն բազմութիւն մը։ Հանգանակութիւն մը կատարուելով 300 տոլար գոյացաւ։*

## ՀԻՒԱՆԴՆԵՐ

Գաւառական հիւանդանոցը

*Տիկին Մայր Պետրոսեան*
*Մարիամ Գասպարեան (Սէլմայէն)*
*Մարտիրոս Սեւադեան*
*Աւետիս Մաղաքեան*

Գըրնէր Սէնիթէրիըմը

*Եղիսաբեթ Տէր Գրիգորեան*
*Շահէ Մեծատուրեան*
*Տիկին Յրանկիւլ*
*Զարմայր Շէհրեան*

Իրենց բնակարանին մէջ

*Տիկին Դանիէլեան*
*Մերկերիտ Մելքոնեան*
*Աստուածատուր Զաթոյեան*
*Գոհարիկ Նշկեան*
*Հայկուհի Թրտոյեան*

---

## ՄԱՀԱԳՐՈՒԹԻՒՆ

*Փօղոս Անտօնեան, մեռաւ գաւառային հիւանդանոցին մէջ ու թաղուեցաւ Ապրիլ 17ին։*

## ՄԿՐՏՈՒԹԻՒՆՔ

*Խորէն Մինասեանի երախան՝ Րաֆֆի։*
*Սարգիս Խօլլիկեանի երախան՝ Լեոն.*
*Կ. Վարդերեսեանի երախան՝ Վարդան։*

---

## Տ Օ Ն Ա Ց Ո Յ Ց

*ՄԱՅԻՍ*

1. Դշ. ԴՋ.—ԽԵ. օր Մեծ Պահոց. Աւագ Դշ.

2. Եշ. ԳԿ.— ԽԶ. օր Մեծ Պահոց. Աւագ Եշ. Երեկոյին Ոտնլուայ։

3. ԴՋ.— ԽԷ. օր Մեծ Պահոց. Աւագ Ուրբաթ։ Չարչարանաց։ Երեկոյին Կարգ Թաղման։

4. Շբ. ԴԿ.— ԽԸ. օր Մեծ Պահոց։ Աւագ Շբ։ Երեկոյին՝ Ճրագալոյց Զատկի։ Նաւակատիք, Խթում։

5. Կիր. ԱՋ.— ԶԱՏԻԿ ՅԱՐՈՒԹԵԱՆ ՏԵԱՌՆ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ։ Տօն յիսնօրեայ։ Ա. օր և Ա. Կիրակի Յինանց։

6. Բշ. ԱԿ.—Բ. օր Յինանց։ Մեռելոց։

12. Կիր. ԴԿ.— Ը. օր և Բ. Կիրակի Յինանց։ Նոր Կիրակի կամ Կրկնազատիկ։

19. Կիր. ԴՋ.— ԺԵ. օր և Գրդ Կիրակի Յինանց։ Աշխարհամատրան կամ Կանաչ Կիրակի։

26. Կիր. ԴԿ.— ԻԲ. օր և Դրդ Կիրակի Յինանց։ Կարմիր Կիրակի։

## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

Լօս Անճէլըսի Հայ Առաք. Եկեղեցւոյ Պաշտամանց

---

Աւագ Շաբթու և Զատիկի առթիւ

* * *

Հոգևոր Հովիւ՝ Տ. ԱՏՈՄ ՔՀ. ՄԵԼԻՔԵԱՆ

* * *

Ապրիլ 28, ԾԱՂԿԱԶԱՐԴ, Կիրակի Առաւօտ, ժամը 10·30-1·30. Պատարագ և քարոզ։

* * *

Երեկոյեան ժամը 7·30-9·00, ԴՌՆԲԱՑԷՔ։

* * *

Մայիս 2, ԱՒԱԳ ՀԻՆԳՇԱԲԹԻ, Երեկոյեան ժամը 7·30-9·30, ՈՏՆԼՈՒԱՑ և ԽԱՒԱՐՈՒՄ։

* * *

Մայիս 4, ԱՒԱԳ ՇԱԲԱԹ, Երեկոյեան ժամը 7·30-9·30, ՃՐԱԳԱԼՈՅՑԻ ՊԱՏԱՐԱԳ։

* * *

Մայիս 5, ԶԱՏԻԿ, Կիրակի առաւօտ, ժամը 10·30-1·30, ՊԱՏԱՐԱԳ և ՔԱՐՈԶ։

---

## ԿԱՐԵՒՈՐ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Արեւելեան նահանգներէն հիւանդ հայեր Քալիֆօրնիա կուգան, անոր մեղմ կլիմայէն օգտուելու յոյսով։ Շատեր անոնցմէ նիւթական անձուկ վիճակի մատնուած ըլլալով, եկեղեցիներու և ժողովուրդին դիմում ընել կը հարկադրուին, ու երբ այս դիմումները յաճախ կը կրկնուին, ալ կը դադրին քաջալերական ըլլալէ, մանաւանդ երբ անոնք իրենց յոյսերուն լոկ երազ մը ըլլալը չուշով հասկնալով, կուզեն անմիջապէս վերադառնալ եկած տեղերնին, ինչ որ խոշոր ծախքի կը կարօտի և կարելի չըլլար հայթայթել։ Իսկ քաղաքային հիւանդանոցը արտաքին նահանգներէ եկած հիւանդներ չընդունիր իր սեմէն ներս։*

*Ներկայ յայտարարութեամբ ստիպուած ենք ծանուցանել իրաց այս կացութիւնը որոց որ անկ է, խնդրելով որ Քալիֆօրնիա գալու որոշումնին տալէ առաջ ի նկատի ունենան յիշուած աննպաստ պարագաները։*

*Կը խնդրենք նաև բոլոր Եկեղեցեաց արժանայարգ հովիւներէն որ ծանուցանեն զայս իրենց բեմերէն։*

*Ուրախ պիտի ըլլանք եթէ Ամերիկահայ թերթեր հաճին արտատպել զայս։*

Հոգաբարձութիւն Սբ. Երր. Եկեղեցւոյ



## Ս. ԵՐՐ. ԵԿԵՂԵՑԻՈՅ ԿԱՐԳԵՐԸ

* * *

### Աւագ Շաբաթ և Զատիկ

Ապրիլ 27, Շաբաթ երեկոյ, Նախատօնակ Ծաղկազարդի, ժամ 7·30

Ապրիլ 28, Կիրակի առաւօտ, Ծաղկազարդ, Ժամերգութիւն և Պատարագ, 9·30–12

Նոյն երեկոյ Դռնբացէք 4·30

Ապրիլ 30, Երեքշաբթի երեկոյ, Յիշատակ Տասն Կուսանաց 7·30

Մայիս 2, Աւագ Հինգշաբթի, առաւօտեան Պատարագ 9·30–11·30

Կէս օրէն վերջը, Յիշատակ Ոտնլուայի, 4·00

Գիշերային Կարգ Խաւարման 7·30

Մայիս 3, Աւագ Ուրբաթ, Առաւօտեան ժամերգութիւն 9·30–10·30

Նոյն երեկոյ Թաղման կարգ 7·30

Մայիս 4, Աւագ Շաբաթ, առաւօտեան ժամերգութիւն 9·30

Երեկոյ. Ճրագալոյցի Պատարագ 5–7·30

Մայիս 5, ԶԱՏԻԿ, առաւօտեան ժամերգութիւն— 9·30

Պատարագ 11–1·00

Մայիս 12, Առաւօտեան ժամերգութիւն, Պատարագ և հոգեհանգստեան պաշտօն վասն ննջեցելոց 9·30–12

Այցելութիւն գերեզմանաց, կէսօրէ ետքը 2·00

Նկատելով որ Զատկի առաւօտուն արտասովոր բազմութիւն մը լեցուած կըլլայ եկեղեցին, աւելորդ չենք համարիր յիշեցնել որ ամէն ոք զգոյշ ըլլայ օրուան մեծ տօնին վեհութիւնը և եկեղեցւոյ պատկառանքն ու յարգանքը չի խանգարել որ և իցէ կերպով, չի մոռնալով մանաւանդ մեր ազգային մեծ սուգը:

Զատկի օրերուն մկրտուելիք երախայ մի բերէք:

ՀՈԳ. Ս. ԵՐՐ. ԵԿԵՂԵՑԻՈՅ

### ԵԿԵՂԵՑԻՈՅ ՀՈՎՈՒԻՆ ԲԱՑԱԿԱՅՈՒԹԻՒՆԸ

Եկեղեցւոյս հովիւը Մարտ 7ին Լօս Անճըլըս գնաց, տեղւոյն Հոգաբարձութեան յատուկ հրաւէրովը, ներկայ ըլլալու իրենց եկեղեցւոյն հաստատութեան և Արժ. Տէր Առոմ Քահանայի ձեռնադրութեան տարեդարձի հանդէսին:

Ապրիլ 7ին Հովիւը Սան Ֆրանսիսկօ գտնուելով, Ֆրէզնոյի Հայ Ազգային Միութեան Մասնաճիւղի փափաքանաց համաձայն, նախագահեց հրապարակային ժողովի մը, ուր կազմուեցաւ Մասնաճիւղ մը Հ. Ա. Միութեան:

Ապրիլ 18ին ալ Եդեմ այցելելով՝ եկեղեցւոյն պիտոյից համար խորհրդակցութիւն մը ունեցաւ տեղւոյն Հոգաբարձութեան և Եկեղեցասէր Տիկնանց ընկերութեան անդամուհիներէ ոմանց հետ:

---

### ԼՈՒՐ ՏՈՒՐ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՀՈՎՈՒԻՆ

Երբ տունիդ կամ ծանօթներուդ մէջ հիւանդ կայ:

Երբ գիտես թէ բանտարկեալ մը կայ:

Երբ գիտես թէ խռովեալներ կան:

Երբ գիտես թէ նորեկ կայ:

Տեղափոխութեան պարագային՝ նոր հասցէդ:

Բնակարանի հասցէ՝ 2143 Վէնթուրա ավնիւ,—

—Թէլէֆօն 4138- W—

---

ԷՋՄԻԱԾԻՆ

Կրօնա-Բարոյական Ամսաթերթ

Հրատարակութիւն՝

ՎԱՐԴԱՆ Ծ. ՎԱՐԴԱՊԵՏ ԳԱՍՊԱՐԵԱՆԻ

Բաժանորդագին՝ տարեկան մէկ տոլար

Նամակ, ծրար են. ղրկուելու են վարի հասցէով: Բաժանորդագինը կանխիկ է:

---

VOL I, NO·5, MAY, 1918 PRICE 10 CENTS

ETCHMIADZIN

A RELIGIOUS MONTHLY PAPER

PUBLISHED BY

REV. V. V. KASPARIAN

P. O. Box 290 Fresno, Cal.

SUBSCRIPTION PRICE $1.00 PER YEAR

---

Entered at the postoffice at Fresno as second class mail matter